որ աճ արտօնուած չէր այդպէս ընելու եւ թէ վարուած է իբրեւ ընկերվարական երեսփոխան, ոչ թէ իբրեւ ներքին նախարար»:

*Հավասի գործակալութիւնը երէկ հետեւեալ զեկոյցը հրատարակեց այս մասին.*

— «Վարչապետ Պ. Շօթան տեղեկանալով կարգ մը թերթերու կողմէ իրեն վերագրուած խօսքերու, յայտարարեց թէ այդ խօսքերը խեղաթիւրուած են եւ թէ ուրիշ ըսելիք չունի այդ մասին»:

**** Ինչպէս հաղորդած էինք երէկ, քաղաքապետական սպասարկութեանց գործադուլը վերջացաւ հինգշաբթի գիշեր ժամը 4.30ին, եւ կէս ժամ վերջը աշխատանքը վերսկսան 130.000 բանուորներ: Ամէն բան մէկ անգամէն վերահաստատուեցաւ, մեծ գոհունակութիւն պատճառելով ժողովուրդին: Յաջորդ օրը Սէնի Նահանգային ընդհ. ժողովը նիստ գումարելով, 50ի դէմ 68 ձայնով հաւանեցաւ 50ի փոխարէն 100 ֆրանք աւելցնել ամսաթոշակները: Այժմ ձեռնարկներ կը կատարուին դադրեցնելու նաեւ միւս գործադուլները, — փոխադրութեանց, նպարեղէնի եւն.:*

## Նոր կացութիւն Եգիպտոսի մէջ

*Ինչպէս հաղորդած էինք երէկ, Եգիպտոսի երիտասարդ Թագաւորը պաշտօնանկ հռչակեց Նահաս փաշայի դահլիճը, 9 ժամ մէջոց տալէ վերջը: Նոր դահլիճը անմիջապէս կազմեց Մահմուտ փաշա, նախագահը ազատական կուսակցութեան, որ փոքրամասնութիւն կը կազմէ երեսփ. ժողովին մէջ: (50էն ալ պակաս, 210ի վրայ): Կը նշանակէ թէ նոր կառավարութիւնը պիտի գործէ իրբեւ տեսակ մը դիկտատորութիւն:*

*Նոր դահլիճին Ա. գործը եղաւ արձակել 500 ուսանողներ որոնք բանտարկուած էին քաղաքական պատճառներով եւ լուծել Կապոյտ շապիկաւորները, որ Վաֆտի մարտական կազմակերպութիւնն էր: Լուծուեցաւ նաեւ Կանանչ շապիկաւորներու կազմակերպութիւնը, որ նոյնպէս մարտական հանգամանք ունի եւ կը բաղկանայ Թագաւորին եւ Ալի Մահիր փաշայի կուսակիցներէն:*

*Ոստիկանական արտակարգ միջոցներ ձեռք առնուեցան բարեկարգութիւնը պահպանելու համար: Թագաւորը Նահաս փաշայի հրաժարումը հաղորդեց նամակով մը, որուն մէջ խստօրէն կը քննադատէր անոր քաղաքականութիւնը: Նոր վարչապետը, Մահմուտ փաշա, 55 տարեկան է եւ աւարտած՝ Օքսֆորտի համալսարանը: Մեծ դեր կատարած է Եգիպտոսի անկախութեան հաստատման համար: Մեծ պատերազմին բանտարկուած էր Մալթայի մէջ, ուրիշ երեւելիներու հետ:*

**** Պաղեստինէն անգլիական զօրագունդ մը ճամբայ ելաւ դէպի Եգիպտոս, ի հարկին օգնելու համար նոր կառավարութեան:*

## «Ռումանիան Ռումանացիներուն»

## եւ ոչ թէ 1,500,000 Հրեաներուն

*Ռումանիոյ նոր վարչապետը, Պ. Կոկա, տեսակցութեան մը մէջ յայտարարեց թէ սկզբունքով հակահրէական չէն, բայց կ'ուզեն որ Ռումանիան դառնայ Ռումանացիներուն հայրենիքը, եւ ոչ թէ տասնեակ հազարաւոր ռուս եւ լեհ փախստականներու, որոնք մեծ մասով հրէական ծագում ունին: «Մենք կ'ուզենք երկրին ճարտարարուեստը, առեւտուրը եւ ազատական ասպարէզները ազատել օտար մենաշնորհէ: Այսօր հրեայ օտարականներ իրենց ափին մէջ առած են ածուխի, երկաթի եւ քարիւղի ճարտարագործութիւնները: Ռումանիոյ մէջ կան 1.500.000 Հրեաներ, 18 միլիոն բնակչութեան վրայ: Մենք երկրին ճարտարագործութիւնները պիտի վերակազմենք փաշական պետութեանց կաղապարին վրայ, թէեւ մասնաւոր խնամութիւն մը չունինք այդ երկիրներուն հետ»:*

**** Նոր կառավարութեան կը վերագրուին հետեւեալ տնօրինութիւնները. — Հրեաներուն արգիլել աշխատակցիլ ռումաներէն թերթերու. ջնջել մենաշնորհեալ (պետական) արտադրութեանց վաճառման արտօնագիրները (ալքոլ, ծխախոտ, լուցկի եւն.), վերաքննել Հրեաներու ստացական հպատակութիւնը՝ սկսելով 1922էն, Հրեաներուն արգիլել որ եւ է առեւտուր գիւղական շրջաններուն մէջ: Սրտաբեկութիւնը մեծ է մասնաւորապէս Պուքրէշի մէջ, ուր Հրեաները առաջնակարգ դիրք ունին հրապարակին վրայ:*

**** Կառավարութիւնը որոշեց վերակազմել իր կուսակցութեան մարտական ընկերակցութիւնը, — «Նիզակակիրներ» — անդամներուն թիւը բարձրացնելով 200.000ի:*

### ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՄՈՍԿՈՒԱՅԷՆ նոր լուրեր կը հաստատեն թէ վերջնապէս աչքէ ինկած է Ձեկային ահարկու վարիչներէն Պետրոս, Լեթոնացի, որ սկիզբէն ի վեր աջ բազուկը եղած է Ձերժինսկիի, Մէնժինսկիի (երկուքն ալ Լեհ) եւ Եակոտայի (Հրեայ): Կը թուի թէ կառավարութիւնը կ'ուզէ ռուսացնել Ձեկան:*

*ՕՃՐԱԳՈՐԾ ՎԱՅՏՄԱՆ իր մօրը հետ կարճ տեսակցութիւն մը ունեցաւ անցեալ օր: Լացաւ, ձեռքերը համբուրեց եւ ներողութիւն խնդրելով, աղաչեց որ միշտ նամակ գրէ: Մայրը անմիջապէս Գերմանիա վերադարձաւ:*

*ՊԱՂԵՍՏԻՆԻ ՄԷՋ կը շարունակուին խռովութիւնները: Մասնաւոր միջոցներ ձեռք առնուեցան Դամասկոսի ճամբան փակելու համար:*



## Ընկերա-Համակրական խնջոյք Նոր Տարւոյ առթիւ

*Պուլվար Օտտոյի Հ. Յ. Դ. «Վազգեն» ենթակոմիտէի կողմէ*

*2 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին «Պառ էնթէրնասիօնալ»ի սրահին մէջ. կը խօսի Ընկեր ՎԱՀԷՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ.*

*Մուտք 5 ֆրանք*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

***ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՇԱՎԻԼԻ Ֆ. Կ. ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ***

*2 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3,30ին գալրոցին սրահին մէջ. Աշակերտներու կողմէ երգ. արտասանութիւն եւ տամախօսութիւն «Նոր Տարի»: Մուտք 2 ֆրանք, փոքրիկները՝ ձրի: Փոքրիկներուն կը բաժնուի Նախընթրիք եւ պտուղ:*

## ԽՆՃՈՅՔ – ԵՐԵԿՈՅԹ

*Կազմակերպուած Մարսէյլի Բարձր Հայքի Հայր. Միութեան կողմէ Նոր Տարւոյ առթիւ, 1 Յունուար, Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ արշալոյս, «Շահրիկեան» սրահին մէջ, 5 Rue d'Eclipse Մարսէյլ: Երգ, նուագ, տօնածառ, աւանդական ՏԱՐԻ եւ զանազան անակնկալներ: Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր: Փափաքողները կրնան ուտելիքը միասին բերել: Մուտքը ազատ է:*

## Ընկերական հաւաքոյթ

*Կազմակերպուած Մարսէյլի Հայ Երաժշտ. Միութեան կողմէ ի պատիւ Պ. ԱՐԱ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ*

*2 Յունուար, կիրակի երեկոյ ժամը 21ին* Brasserie du Chapitre*ի մէջ խօսք պիտի առնէ Պ. ԱՐՇ. ՊԱՐԹԵՒԵԱՆ երաժշտական նիւթի մը շուրջ: Երգ. պար եւայլն:*



### ՎԱՐՁՈՒ ԵՆ

*Վարձու է երկու սենեակ եւ խոհանոց մը օդասուն վայրի մէջ: Ջուր, կազ, ելեկտրականութիւն: Մանրամասնութեանց համար դիմել Պ. Սօնիկեանի,* 52, Rue Gustave Courbet, Bagneux, (Seine):

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Պետրոս Նալպանտեան կը փնտռէ իր եղբայրը՝ Սուրէն Նալպանտեան (Մալաթիոյ Շիրոյի Քեֆարտէկ գիւղէն) որ 1926ին մեկնած է Պրազիլիա եւ իրմէ տեղեկութիւն չկայ մինչեւ այսօր: Իմացնել* D. Aram coiffeur, 4, rue du 11 Novembre, St. Chamond, (Loire), France:




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesm PARIS (13e) Imprimerie A. DER (AGOPIAN)

